Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(բ)Կ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ

ապրիլ

№ 7 1948

«ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ»-Ի ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

Գինը 50 կոպ.

Պատասխանատու խմբագիր՝
ԱՐ. ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ

ՎՖ 02875 Պատվեր № 277 Տիրաժ 8.550
Ստորագրված է տպագրության 5/IV 1948 թ.
Պոլիգրաֆ. և Հրատ. վարչ. № 2 տպարան, Երևան

Отдел Пропаганды и агитации ЦК КП(б)
Армении
Блокнот Агитатора

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ




Խմբագրության հասցեն.— Երևան, Նալբանդյան 32, ՀԿ(բ)Պ Կենտկոմի Պրոպագանդայի և Ագիտացիայի բաժին, հեռախոս՝ 33—86։




# ՄԱՅԻՍԻ 1-Ը ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԻ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՏՈՆԻ ՕՐՆ Է

Հայրենական պատերազմում տարած մեծագույն համաշխարհային-պատմական հաղթանակից հետո երրորդ անգամ Սովետական Միության ժողովուրդներն այս տարի աշխատավորների միջազգային տոնը՝ Մայիսի Մեկը նշում են խաղաղ ստեղծագործ աշխատանքի պայմաններում, պայքարելով ժողովրդական տնտեսության վերականգնման և հետագա զարգացման հետպատերազմյան ստալինյան հնգամյակը չորս տարում կատարելու համար։ Մոխրակույտերի միջից բարձրանում են գերմանա-ֆաշիստական զավթիչների կողմից ավերված քաղաքներն ու գյուղերը, վերականգնվում են արդյունաբերական ձեռնարկությունները, կոլխոզներն ու սովխոզները, բուռն թափով կառուցվում են նոր գործարաններ ու ֆաբրիկաներ, դպրոցներ ու հի-

վանդանոցներ, բնակելի տներ ու գիտական հաստատություններ:

Սովետական ստեղծագործ ժողովուրդը Մայիսի Մեկը դիմավորում է ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում ձեռք բերված մեծագույն հաջողություններով:



Ե՞րբ և ի՞նչպես սահմանվեց Մայիսի Մեկի տոնակատարությունը:

Մայիսի Մեկը, աշխատավորների միջազգային տոնի օրը, նշվում է դեռ անցյալ դարից: Ընկեր Ստալինը 1912 թվականի ապրիլին «Կեցցե՛ Մայիսի Մեկը» վերնագրով պրոկլամացիայի մեջ գրել է.

«Այդ 1889 թվականին էր, երբ բոլոր երկրների սոցիալիստների Փարիզի կոնգրեսում բանվորները որոշեցին հատկապես այսօր, Մայիսի Մեկի օրը, երբ բնությունն արթնանում է ձմեռային քնից, անտառներն ու լեռները ծածկվում են կանաչով, դաշտերն ու մարգագետինները զարդարվում են ծաղիկներով, արեգակն սկսում է ավելի ջերմորեն տաքացնել, օդի մեջ զգացվում է վերակենդանացման բերկրանքը, իսկ բնությունը անձնատուր է լինում պարի ու ցն-



ծության,— նրանք որոշեցին հատկապես այսօր հայտարարել ամբողջ աշխարհին բարձրաձայն ու բացահայտորեն, որ բանվորները մարդկությանը բերում են գարուն և ազատագրություն կապիտալիզմի կապանքներից, որ բանվորները կոչված են նորոգելու աշխարհը ազատության ու սոցիալիզմի հիմունքով»: (Երկեր. հատ, 2, էջ 257):

Մայիսի Մեկի տոնակատարության սահմանումը վկայում էր, որ բանվորական շարժումն անցել է նոր, ավելի բարձր աստիճանի: Ամբողջ աշխարհում բանվոր դասակարգի կազմակերպվածության, պրոլետարիատի դասակարգային ինքնագիտակցության աճումը հրամայաբար պահանջում էր կապիտալիզմի դեմ պայքարելու ավելի մասսայական, ավելի ներգործուն ձևեր: Բանվորների ցույցերը, մանիֆեստացիաներն ու միտինգներն էլ հենց, իրադրությանը համապատասխանող քաղաքական լոզունգների առաջադրումով, հանդիսացան բուրժուազիայի դեմ բանվոր դասակարգի քաղաքական պայքարի ձևերից մեկը:

1890 թվականին համարյա բոլոր կապիտալիստական երկրներում բանվորներն առաջին անգամ նշեցին Մայիսի Մեկի օրը:

Ռուսաստանում ևս 1890 թվականին նշվեց առաջին մայովկան:

Այդ ժամանակից սկսած միջազգային պրոլետարիատը Մայիսի Մեկի օրը ցուցադրում է իր միասնությունը, իր պատրաստակամությունը կապիտալիզմի դեմ պայքարելու համար:

Ռուսաստանում Մայիսի Մեկի տոնակատարությունը Լենին-Ստալինի պարտիայի ղեկավարությամբ օգտագործվեց բանվորական մասսաներին ցարական ինքնակալության դեմ ռևոլյուցիոն մարտերի նախապատրաստելու նպատակով:

Եթե մինչռևոլյուցիոն Ռուսաստանում բանվոր դասակարգը Մայիսի Մեկի օրը նշում էր ցարական ժանդարմերիայի տեռորի ծանր պայմաններում և եթե ներկայումս էլ դեռ մի շարք կապիտալիստական երկրներում ոստիկանական ռեժիմի ամենադժվարին պայմաններում են նշում Մայիսի Մեկի օրը, ապա ՍՍՌՄ-ում, Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ Ռևոլյուցիայի հաղթանակից հետո արմատապես փոխվել է Մայիսի Մեկի տոնակատարության բնույթն ու բովանդակությունը: Մեզ մոտ աշխատավորները Մայիսի Մեկը տոնում են ազատ երկրում, պրոլետարիատի դիկտատուրայի



պայմաններում, իրենց երկրի հզորությունն էլ ավելի ամրապնդելու, սոցիալիստական Հայրենիքի հետագա բարգավաճման համար պայքարելու լոզունգներով:

## ՊԱՅՔԱՐ ՀՆԳԱՄՅԱԿԸ ՉՈՐՍ ՏԱՐՈՒՄ ԿԱՏԱՐԵԼՈՒ ՀԱՄԱՐ

Սովետական մեծ ժողովուրդը համակված է ամենահաղթ աշխատանքային եռանդով: Հետպատերազմյան ստալինյան հնգամյակի երրորդ տարում մեր Հայրենիքի աշխատավորները, փառապանծ բոլշևիկյան պարտիայի ղեկավարությամբ և մեծ Ստալինի առաջնորդությամբ էլ ավելի մեծ եռանդով ու անձնվիրաբար պայքարում են մեր երկրի ժողովրդական տնտեսության վերականգնման ու զարգացման հնգամյա պլանը կատարելու և գերակատարելու համար: Սովետական ժողովուրդը գիտակցում է, որ ստալինյան հնգամյա պլանը համապատասխանում է իր կենսական շահերին: Այդ պատճառով էլ նա հերոսական անձնվիրությամբ պայքարում է խաղաղ ստեղծարար աշխատանքի ճակատում, այդ պատճառով էլ ժողովրդի ընդերքից ծնունդ են առնում այնպիսի հերոսներ, որոնց նմանը չի տեսել

մարդկության պատմության, որոնց նմանը չկա և չի կարող լինել կապիտալիստական աշխարհում։

Օրեցօր աճում են մեր երկրում ստախանովականների— արտադրության նորարարների շարքերը։ Հենց թեկուզ Դոնբասի հանքափոր Ալեքսանդր Ցյուրենկովի օրինակով կարելի է համոզվել, թե արտադրողական ուժերի զարգացման ինչպիսի չտեսնված տեմպեր կան մեր երկրում։

Ալեքսանդր Ցյուրենկովը գերազանցեց հետպատերազմյան տարիներին Դոնբասում սահմանված հանքահատման բոլոր ռեկորդները։ Աշխատելով Կալինինի անվան հանքահորում, անվանի ստախանովականը մեկ հերթափոխի ընթացքում սղոցեց 426 տոննա ածուխ, որը կազմում է հերթափոխային նորմայի 3.130 տոկոսը։ Նրա հետևից հանքախորշն ամրացնում էին չորս փորձված հանքափորներ, որոնք նույնպես տվին հանքահորի ամրացման ռեկորդային ցուցանիշներ։

Մեր երկրում կան հարյուրավոր ու հազարավոր այդպիսի հիանալի հայրենասերներ, որոնք արդյունաբերության, տրանսպորտի և գյուղատնտեսության նորարարներն են։

«Հնգամյակը չորս տարում» լոզունգը դար-



ձել է խաղաղ աշխատանքի ճակատում սովետական մարդկանց պայքարի ու հաղթանակի դրոշը։ Այդ լոզունգը ելնում է ժողովրդի ընդերքից, հնգամյակի առաջին երկու տարվա պլանները կատարելու հետևանքով ստեղծված հնարավորություններից։

Համախառն արտադրանքի թողարկման 1947 թվականի պլանը ՍՍՌՄ արդյունաբերությունը կատարեց 103,5 տոկոսով, որն ապահովեց նրա աճը 1946 թվականի համեմատությամբ 22 տոկոսով։ Արդեն 1947 թվականի հոկտեմբերին արդյունաբերական արտադրանքի թողարկումը Սովետական Միության մեջ հասավ մինչպատերազմյան մակարդակին։

Էլ ավելի ուշագրավ են հետպատերազմյան հնգամյակի երրորդ վճռական տարվա ցուցանիշները։ 1948 թվականի առաջին եռամսյակում ՍՍՌՄ ամբողջ արդյունաբերության համախառն արտադրանքը անցյալ տարվա առաջին եռամսյակի համեմատությամբ աճեց 32 տոկոսով։

Գյուղատնտեսության համախառն արտադրանքը 1947 թվականին, նախորդ տարվա համեմատությամբ, աճեց 32 տոկոսով, ընդ որում հացահատիկային կուլտուրաների համախառն բերքը՝ 58 տոկոսով։

*Արդյունաբերության և գյուղատնտեսության բնագավառում ձեռք բերված հաջողությունները բոլշևիկյան պարտիային և սովետական կառավարությանը հնարավորություն տվին կիրառելու քաղաքական մեծ նշանակություն ունեցող կարևորագույն մի ձեռնարկում — դրամական ռեֆորմը և քարտային սիստեմի վերացումը։ Այդ ձեռնարկումը նոր ուժով ցույց է տալիս մեր կառավարության և ընկեր Ստալինի ամենօրյա հոգատարությունը սովետական ժողովրդի նյութական բարեկեցության մակարդակը բարձրացնելու մասին։*

*Դրամական ռեֆորմի կիրառման և բնակչության մատակարարման քարտային սիստեմը վերացնելու հետևանքով զգալիորեն աճեց պարենային և արդյունաբերական ապրանքների վաճառքը բնակչությանը պետական ու կոոպերատիվ մանրածախ առևտրական ցանցի միջոցով։ Այսպես, օրինակ, հացի վաճառքը 1948 թվականի առաջին եռամսյակում, անցյալ տարվա առաջին եռամսյակի համեմատությամբ աճել է 72 տոկոսով, շաքարի վաճառքը՝ 2,7 անգամ. ձկնեղենինը՝ 25 տոկոսով, կենդանական յուղինը՝ 13 և բուսական յուղինը՝ 11 տոկոսով, հրուշակեղենինը՝ 57 տոկոսով, կրուպեղենի*



*և մակարոնեղենի վաճառքը՝ 52 տոկոսով, բրդե ու մետաքսե գործվածքեղենինը՝ 44 տոկոսով։*

*Հայկական ՍՍՌ հանրային սննդի ցանցում ապրանքաշրջանառության պլանը 1948 թվականի առաջին եռամսյակում կատարվել է 100 տոկոսով։ Պետական և կոոպերատիվ մանրածախ առևտրի սիստեմում հացի վաճառքը 1948 թվականի առաջին եռամսյակում, անցյալ տարվա առաջին եռամսյակի համեմատությամբ, ավելացել է 2,3 անգամ։*

*Պետական մանրածախ գներն իջեցնելու, քարտերը վերացնելու և դրամական ռեֆորմի հետևանքով կոլխոզային ու կոոպերատիվ շուկայում գներն զգալիորեն իջել են, մոտենալով պետական մանրածախ գներին։ 1948 թվականի առաջին եռամսյակում կոլխոզային շուկայում, անցյալ տարվա առաջին եռամսյակի համեմատությամբ, գներն իջան ավելի քան երեք անգամ, իսկ կոոպերատիվ շուկայի գները քաղաքներում իջան ավելի քան երկու անգամ։*

*Այդ բոլորի հետևանքով ռուբլու գնողունակությունը 1948 թ. առաջին եռամսյակում բարձրացավ 41 տոկոսով, իսկ բանվորների ու ծառայողների ռեալ աշխատավարձը անցյալ տարվա առաջին եռամսյակի համե-*

մատությամբ բարձրացավ միջին հաշվով 51 տոկոսով։ Մի շարք ապրանքների գների լրացուցիչ իջեցումը, որ կատարվեց վերջին օրերս, է՛լ ավելի է բարձրացնում ռուբլու գնողունակությունը, իսկ հետևապես նաև բանվորների ու ծառայողների ռեալ աշխատավարձը։

Սովետական ժողովուրդը, Լենինի-Ստալինի փառապանծ պարտիայի ղեկավարությամբ, չտեսնված արագ տեմպերով վերականգնում է գերմանական օկուպացիայի հետևանքով ավերված գործարաններն ու հանքահորերը, ֆաբրիկաներն ու երկաթուղիները, քաղաքներն ու գյուղերը։

Օկուպացիայից ազատագրված շրջաններում արդյունաբերության համախառն արտադրանքը այս տարվա առաջին եռամսյակում՝ անցյալ տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ, աճեց 59 տոկոսով։ Այդ շրջաններում 1948 թ. առաջին եռամսյակում կատարված է 3 միլիարդ ռուբլու կենտրոնացված կապիտալ շինարարություն, կառուցված և վերականգնված է 350 հազար քառ. մետր բնակելի տարածություն՝ քաղաքներում, և 9 հազար բնակելի տուն՝ գյուղական վայրերում։

Յուրաքանչյուր օր շահագործման են հանձ-



նըվում նոր հանքահորեր, հնոցներ, էլեկտրակայաններ։ Ածխարդյունաբերության աշխատողները գիտակցելով ածխի կարևորությունը երկրի ժողովրդական տնտեսության համար, ոչ միայն հաջողությամբ վերականգնում են ածխահանքները, այլև պարտավորվել են ածխի հանույթի հնգամյակը կատարել չորս տարում։

Նույնպիսի հայրենասիրական զգացումներով են համակված մետալուրգիական արդյունաբերության աշխատողները, որոնք Կուզնեցկի և Մագնիտոգորսկի մետալուրգիական կոմբինատների կոլեկտիվների օրինակով պայքարում են հնգամյակը չորս տարում կատարելու համար։ Լենինգրադցիների հայրենասիրական կոչով երկրի նավթագործները նույնպես պարտավորվել են հնգամյակը կատարել չորս տարում։ Մեր Հայրենիքի խոշորագույն ինդուստրիալ կենտրոնները՝ Մոսկվան, Լենինգրադը և այլն, ամսեամիս կատարում են արտադրական պլանները։

Ամբողջ սովետական երկիրը համակված է համաժողովրդական սոցիալիստական մրցությամբ։ Այժմ արդեն ոչ թե առանձին ստախանովականներ, այլ ամբողջ ձեռնար-

կոլեկտիվների, արդյունաբերության ամբողջ ճյուղերի կոլեկտիվներն են մրցում միմյանց հետ։ Մեր օրերում մրցությունն ընդունել է իրոք համաժողովրդական բնույթ և դարձել է յուրաքանչյուր ռեսպուբլիկայի, յուրաքանչյուր մարզի ու երկրամասի, քաղաքի ու շրջանի տնտեսական շինարարության հզոր շարժիչ ուժը։

1948 թվականի Մայիսմեկյան տոնը արդյունաբերության, գյուղատնտեսության, կուլտուրայի և գիտության բնագավառում ձեռք բերված նորանոր հաջողություններով են դիմավորում բազմազգ Սովետական Միության բոլոր ժողովուրդները։

Ստալինյան հնգամյակների տարիներին Բելոռուսական ՍՍՌ-ում ստեղծվել է 1.700 նոր, տեխնիկապես առաջավոր արդյունաբերական ձեռնարկություն։

Ղազախական ՍՍՌ-ում անցյալի նահապետականությունը և անկուլտուրականությունը փոխարինել են հզոր ինդուստրիան և մեքենայացված գյուղատնտեսությունը։ Ղազախստանն այժմ ՍՍՌՄ-ում առաջին տեղն է գրավում գունավոր մետաղների արդյունահանմամբ և երրորդ տեղը՝ նավթի հանույթով։



Ստալինյան հնգամյակների ընթացքում չտեսնված ծաղկման է հասել Վրացական ՍՍՌ-ն։ Այնտեղ կառուցված է ավելի քան 800 նոր արդյունաբերական ձեռնարկություն։ Ռեսպուբլիկայի մարգանեցի, նավթամշակման և ածխային արդյունաբերությունը փոխադրված է առաջավոր տեխնիկայի ռելսերի վրա։ Հաջողությամբ կառուցվում են Անդրկովկասյան մետալուրգիական կոմբինատը և Քութայիսիի ավտոմոբիլային գործարանը։

Սովետական Ադրբեջանում — նավթի և բամբակի ռեսպուբլիկայում — ստալինյան հնգամյակների տարիներին ստեղծված են արդյունաբերության այնպիսի ճյուղեր, ինչպես լեռնահանքային, քիմիական, տեքստիլ, սննդի, թեթև արդյունաբերությունը և այլն։

Եղբայրական միութենական ռեսպուբլիկաներից հետ չի մնում նաև Սովետական Հայաստանը, որը ստալինյան նոր հնգամյակի երրորդ տարին թևակոխեց ժողովրդական տնտեսության բնագավառում ձեռք բերած զգալի նվաճումներով։ Արդյունաբերության համախառն արտադրանքի անցյալ տարվա պլանը ռեսպուբլիկայում ժամկետից շուտ կատարվեց 107,2 տոկոսով։

Բանվորների աշխատավարձի մակարդակն աճել է 40,3 տոկոսով։ Սովետական Հայաստանի արդյունաբերությունն անցյալ տարի յուրացրեց արտադրանքի մի շարք նոր տեսակների թողարկումը՝ էլեկտրական տրանսֆորմատորների, գեներատորների, կոմպրեսորների, կաբելային պարագաների, հանքային պարարտանյութերի, շաքարի արտադրությունը և այլն, իսկ այս տարվա առաջին եռամսյակում նաև զտված պղնձի արտադրությունը։

1948 թվականի առաջին եռամսյակում արդյունաբերության համախառն արտադրանքը նախորդ տարվա առաջին եռամսյակի համեմատությամբ աճեց 22 տոկոսով։ Կապիտալ աշխատանքների ծավալը՝ 25 տոկոսով։ Առաջին եռամսյակում ավարտվեց և շահագործման հանձնվեց Ալավերդու պղնձաձուլական գործարանի նոր ցեխը։

Բանվորների և ծառայողների թիվը ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության մեջ անցյալ տարվա առաջին եռամսյակի համեմատությամբ աճեց 12.3 հազար մարդով, յուրաքանչյուր բանվորի աշխատանքի արտադրողականությունը բարձրացավ 6,8 տոկոսով։

Ռեսպուբլիկայի արդյունաբերական ձեռ-



նարկություններում օրեցօր աճում է արտադրական պլանները ժամկետից շուտ կատարելու համար մրցողների թիվը։ Արդյունաբերության հազարավոր ստախանովականներ իրենց անձնվեր աշխատանքով նվաճել են ժողովրդի սերն ու հարգանքը։ Դրանց թվումն են Դազգահագործիքային գործարանի ֆրեզերովշչիկ Նովիկովը, Գյուղգործիքների գործարանի ռանդող Վ. Ներսիսյանը, Կաբելի գործարանի փականագործ Արագած Կարապետյանը, Երևանի էլեկտրոմեքենաշինական գործարանի խառատ Բոզոյանը, Լենինականի Տեքստիլ կոմբինատի ջուլհակուհի Մ. Զախոյանը, Մոլոտովի անվան գործարանի մանածագործ Անգին Արսենյանը և շատ ուրիշներ։

Երևանի Կարբիդի, Կաբելի, Ձերժինսկու անվան Դազգահաշինական գործարանների, Ձեթ-օճառ կոմբինատի և Լենինականի Մոլոտովի անվան Մանվածքային ֆաբրիկայի կոլեկտիվների նախաձեռնությամբ ռեսպուբլիկայում լայնորեն ծավալվել է նախամայիսյան սոցիալիստական մրցությունը՝ 1948 թվականի առաջին կիսամյակի պլանը ժամկետից շուտ կատարելու համար։

Արդյունաբերական ձեռնարկությունների

կոլեկտիվները ներկայումս պայքարում են
չափազանց կարևոր մի խնդրի իրականաց-
ման համար —այն է՝ աշխատել շահութա-
բերությամբ, առանց պետական դոտացիա-
յի: Մոսկվայի բանվորների այդ հիանալի
նախաձեռնությանն արձագանքեցին Երևանի
Ձերժինսկու անվան Դազգահաշինական
գործարանի, Կաշվի գործարանի և Շինա-
նյութերի գործարանի կոլեկտիվները, որոնք
դիմել են ռեսպուբլիկայի բոլոր արդյունա-
բերական ձեռնարկություններին՝ կոչ անելով
հրաժարվել պետական դոտացիայից, անց-
նել շահութաբեր աշխատանքի և ամեն կերպ
բարձրացնել յուրաքանչյուր բանվորի աշ-
խատանքի արտադրողականությունը:

Վերջերս տեղի ունեցած պարտիական-
տնտեսական ակտիվի ռեսպուբլիկական
խորհրդակցությունը ժողովուրդների առաջ-
նորդ ընկեր Ստալինին ուղարկած նամակի
մեջ Սովետական Հայաստանի արդյունաբե-
րության բոլոր աշխատողների անունից
պարտավորություն ստանձնեց ժամկետից
շուտ կատարելով 1948 թվականի արտա-
դրական պլանը, ապահովել հնգամյակի կա-
տարումը չորս տարում:

Խորհրդակցությունը ռեսպուբլիկայի ար-



դյունաբերության աշխատողների ուշադրու-
թյունը հրավիրեց այն բանի վրա, որ ան-
հրաժեշտ է արտադրության մեջ արագացնել
տեմպերը, է՛լ ավելի բարձրացնել աշխա-
տանքի արտադրողականությունը և ամենա-
արագ կերպով վերացնել աշխատավորների
կուլտուր-կենցաղային սպասարկման գոր-
ծում եղած թերությունները:

Մայիսմեկյան տոնին ռեսպուբլիկայի
բոլոր բանվորների և բանվորուհիների, ին-
ժեներա-տեխնիկական աշխատողների, ար-
դյունաբերության և տրանսպորտի բոլոր
աշխատողների լոզունգը պետք է լինի՝
բարձր արտադրողականությունը, շահութա-
բեր աշխատանքը, խնայողությունն ամեն
ինչում՝ հումքի, վառելանյութի, էլեկտրոէ-
ներգիայի ծախսման մեջ, և այլն:

Սովետական ժողովուրդը գիտե, որ աշ-
խատում է իր համար, հասարակության հա-
մար, հարազատ Հայրենիքի համար: Ուստի
նա իր բոլոր ուժերը, իր ամբողջ եռանդը
գործի է դնում ի բարօրություն հարազատ
Հայրենիքի: Սիրել Հայրենիքը, նշանակում
է անդուլ կերպով աշխատել նրա բարօրու-
թյան համար, անձնվիրաբար և բոլոր ու-
ժերով պայքարել Սովետական պետության

շահերի համար, սոցիալիստական Հայրենիքի շահերի համար։ Այն ժողովուրդը, որը հնարավորություն է ստացել աշխատելու իր համար, այլ ոչ թե շահագործողների համար, օրեցօր երևան է բերում իր տաղանդներն ու ընդունակությունները։ Աշխատանքը, որ կապիտալիզմի օրով մի ծանր բեռ էր, սովետական հասարակակարգում աննախընթաց բարձրության է հասցված։

Միայն ազատ աշխատանքի վրա հիմնված հասարակությունը կարող է ստեղծել այնպիսի հիանալի տրադիցիա, ինչպիսին ծրնվել է մեր երկրում,— այն է՝ նշանակալից տոները դիմավորել նորանոր աշխատանքային սխրագործություններով, յուրաքանչյուր տոն դիտել իբրև անցած էտապի ավարտում և սկիզբը նոր էտապի, որը պետք է նշանավորվի է՛լ ավելի մեծ հաջողություններով։

Այս է պատճառը, որ մեր ամբողջ լայնածավալ սովետական երկրում, Կարպատյան լեռներից մինչև Կուրիլյան կղզիները, Հյուսիսային Սառուցյալ օվկիանոսից մինչև Սև և Կասպից ծովերը սովետական ժողովուրդը մտել է նախամայիսյան սոցիալիստական մրցության մեջ՝ հետպատերազմյան ստա-



լինյան հնգամյակի երրորդ վճռական տարվա առաջին կիսամյակի պլանները ժամկետից շուտ կատարելու համար։ Ամենուրեք նախամայիսյան կոչն է.

— Ավելի՛ բարձրացնել մեր սոցիալիստական Հայրենիքի ժողովրդական տնտեսության վերականգնման ու զարգացման տեմպերը։

— Ստալինյան հնգամյակը կատարել չորս տարում։

## ՀԱՆՈՒՆ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՆՈՐ ՀԶՈՐ ՎԵՐԵԼՔԻ

Սովետական երկիրը Մայիսի Մեկը դիմավորում է նաև սոցիալիստական գյուղատնտեսության մեջ ձեռք բերված խոշոր նվաճումներով։ ՀամԿ(բ)Պ Կենտկոմի Փետրվարյան պլենումի պատմական որոշումը հզոր խթան հանդիսացավ մեր երկրի գյուղատնտեսության հետպատերազմյան նոր վերելքի համար։

Հոյակապ են պարտիայի ձեռնարկած միջոցառումների արդյունքները անցած մեկ տարվա ընթացքում։ Մեր երկրի միլիոնավոր կոլխոզնիկները և կոլխոզնիկուհիները, սով-

խողների և մեքենա-տրակտորային կայաննե-
րի աշխատողները կենսագործելով ՀամԿ(բ)Պ
Կենտկոմի Փետրվարյան պլենումի որոշումը,
զգալիորեն ընդարձակեցին ցանքատարածու-
թյունները և բարձրացրին գյուղատնտեսա-
կան կուլտուրաների բերքատվությունը: Գյու-
ղատնտեսության համախառն արտադրանքը
1947 թվին, նախորդ տարվա համեմատու-
թյամբ, աճեց 32 տոկոսով: Ավելի մեծ չա-
փով աճեց հողագործության արտադրանքը:

Բարձր բերքի համար մղվող պայքարում
վիթխարի դեր խաղացին ՍՍՌՄ Գերագույն
Սովետի Նախագահության Հրամանագրերը՝
բարձր բերքի առաջավորներին Սոցիալիս-
տական Աշխատանքի Հերոսի կոչում շնորհե-
լու և շքանշաններով ու մեդալներով պարգե-
վատրելու մասին: Ամբողջ երկրում աննա-
խընթաց ուժով ծավալվեց համաժողովրդա-
կան սոցիալիստական մրցությունը՝ բարձր
բերքի համար, մեծ առաջնորդ ընկեր
Ստալինին տված խոստումը օրինակելիորեն
կատարելու համար:

Կոլխոզային գյուղացիությունը, սովխոզնե-
րի և ՄՏ կայանների աշխատողները բոլշե-
վիկների պարտիայի ղեկավարությամբ ար-
տադրական մեծ վերելք ստեղծեցին մեր
երկրի գյուղատնտեսության բոլոր ճյուղե-



րում: Այդ վերելքի բնորոշ ապացույցն են
հետևյալ պերճախոս թվերը:

Հացահատիկի համախառն բերքը Սովե-
տական Միությունում 1947 թվականին, նա-
խորդ տարվա համեմատությամբ, աճեց 58
տոկոսով, բամբակինը՝ 21 տոկոսով, կարտո-
ֆիլինը՝ 30 տոկոսով, շաքարի ճակնդեղինը՝
190 տոկոսով, արևածաղկինը՝ 79 տոկոսով,
վուշինը՝ 78 տոկոսով և այլն: Հացահատիկի
համախառն արտադրանքը երկրում անցյալ
տարի հասավ մինչպատերազմյան մակար-
դակին: Դրա հետ միասին անցյալ տարի,
նախորդ տարվա համեմատությամբ 3,5 մի-
լիոն հեկտարով ավելի աշնանացան ցորենի
ցանք կատարվեց 1948 թվականի բերքի հա-
մար: Երկրի կոլխոզները կատարեցին նաև
8 միլիոն հեկտարով ավելի ցրտահերկ, որն
ընթացիկ տարվա գարնանացանի բարձր
բերքի կարևորագույն նախադրյալ է հանդի-
սանում:

Անցյալ գյուղատնտեսական տարում հա-
ջողությամբ աշխատեցին սովետական երկ-
րի մեքենա-տրակտորային կայանները, ո-
րոնք 29 տոկոսով ավելի աշխատանք կա-
տարեցին 1946 թվականի համեմատությամբ:
Յուրաքանչյուր տրակտորի միջին արտադրո-
ղականությունն աճեց 21 տոկոսով:

Այս թվերը ցույց են տալիս մեր երկրի գյուղատնտեսության հզոր վերելքը։ Սովետական գյուղատնտեսությունն աշխարհում ամենախոշոր մեքենայացված գյուղատնտեսությունն է։ Բոլշևիկյան պարտիան և Սովետական կառավարությունը, հսկայական օգնություն են ցույց տալիս մեր գյուղատնտեսությանը, հետզհետե բարձրացնելով նրա տեխնիկական զինվածության մակարդակը։ 1947 թվականին, նախորդ տարվա համեմատությամբ, տրակտորների արտադրությունը երկրում աճեց 109 տոկոսով, գյուղատնտեսական մյուս մեքենաների արտադրությունը՝ 106 տոկոսով, պարարտանյութերի արտադրությունը՝ 36 տոկոսով։

Սովետական Միության գյուղատնտեսության աշխատողները գյուղատնտեսական տարվա վերջին երկրի բոլոր ծայրերից մեծագույն ոգևորությամբ զեկուցեցին ընկեր Ստալինին իրենց պարտավորությունները կատարելու մասին։ Կոլխոզային մասսաների այդ հերոսական աշխատանքը բարձր գնահատականի արժանացավ բոլշևիկյան պարտիայի և սովետական պետության կողմից։ Գյուղատնտեսության շատ առաջավորներ արժանացան Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի բարձր կոչման, հազարավոր-



ները պարգևատրվեցին Սովետական Միու-
թյան շքանշաններով ու մեդալներով։

Հսկայական չափով բարձրացել է կոլխոզային գյուղացիության նյութական և կուլտուրական կյանքի մակարդակը, աճել են կոլխոզների հանրային միջոցները, կոլխոզնիկների աշխօրերի դիմաց բաշխվեցին ավելի մեծ քանակությամբ մթերքներ, կոլխոզները կազմակերպչորեն ու տնտեսապես ամրապընդվեցին, աճեց նրանց տնտեսական հզորությունը։

Ամբողջ սովետական երկրի հետ միասին Մայիսի Մեկը աչքի ընկնող նվաճումներով են դիմավորում Սովետական Հայաստանի կոլխոզնիկներն ու կոլխոզնիկուհիները, ՄՏ կայանների և սովխոզների աշխատողները։

Անցած 1947 թվականը Սովետական Հայաստանի գյուղատնտեսության մեջ եղավ մասսայական աշխատանքային սխրագործությունների տարի։ ՀամԿ(բ)Պ Կենտկոմի փետրվարյան պլենումի պատմական որոշումը կենսագործելու, մեծ առաջնորդ ընկեր Ստալինին տված խոստումը կատարելու համար Ռեսպուբլիկայի կոլխոզային մասսաները աշխատանքային մեծ ակտիվություն ցուցաբերեցին։ Բարձր բերքի համար մղվող պայքարն ստացավ համաժողովրդական բը-

նույթ։ Նախորդ տարվա համեմատությամբ 1947 թվականին կոլխոզներում ցանքերի տարածությունն աճեց 13,7 հազար հեկտարով, իսկ նախապատերազմյան շրջանի համեմատությամբ՝ ավելի քան 31 հազար հեկտարով։

Ռեսպուբլիկայի կոլխոզները մեծ հաջողության հասան հատկապես հասկավոր կուլտուրաների բերքատվության բարձրացման գործում։ Լայնորեն կիրառելով առաջավոր ագրոտեխնիկան, կոլխոզներն ապահովեցին հացահատիկի բարձր բերքը, որ 1946 թվականի համեմատությամբ աճեց ավելի քան 33 տոկոսով, իսկ նախապատերազմյան մակարդակի համեմատությամբ մոտ 50 տոկոսով։

Բազմաթիվ կոլխոզներ, հարյուրավոր բրիգադներ և օղակներ կրկնակի, եռակի և նույնիսկ քառակի չափով գերազանցեցին բերքատվության առաջադրանքները։ Նոր Բայազետի, Միկոյանի, Ախտայի, Թալինի, Կոտայքի, Աշտարակի և շատ այլ շրջաններում առաջավոր օղակները հեկտարից ստացան 30—40 ցենտներ հացահատիկի միջին բերք։ Ռեկորդային բերքի համար ռեսպուբլիկայի 15 առաջավոր կոլխոզնիկների շնորհվեց Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի պատվավոր կոչումը։ Բարձր բերքի 18 վար-



պետներ պարգևատրվեցին Լենինի շքանշանով, 24 մարդ՝ Աշխատանքային Կարմիր Դրոշի շքանշանով, 47 մարդ մեդալներով։

Զգալի հաջողություններ են ձեռք բերվել նաև տեխնիկական կուլտուրաների բերքատվության բարձրացման գործում։ Ծխախոտի ցանքատարածությունը ռեսպուբլիկայում մեկ տարում աճեց 1000 հեկտարով։ Ծխախոտագործական կոլխոզները պլանից ավելի պետությանը հանձնեցին 1415 ցենտներ ծխախոտի հումք։

Ինչպես գյուղատնտեսական մյուս կուլտուրաների, այնպես էլ ծխախոտագործության ասպարեզում աճեցին բարձր բերքի տասնյակ վարպետներ։ Շամշադինի շրջանի Մովսես գյուղի ծխախոտագործները պետությանը հանձնեցին ավելի քան 1470 ցենտներ ծխախոտի հումք, մթերման պլանը գերակատարելով ավելի քան 500 ցենտներով։ Նույն շրջանի Ներքին Կարմիր Աղբյուր գյուղի կոլխոզը պետությանը հանձնեց 1360 ցենտներ ծխախոտ, մթերման պլանը գերակատարելով 525 ցենտներով։ Իսկ Մովսես գյուղի կոլխոզի օղակավար Ա. Ասիլյանը իր օղակի մշակած պլանտացիաների յուրաքանչյուր հեկ-

տարից ստացավ ծխախոտի 25 ցենտներ միջին բերք։

Շաքարի ճակնդեղի մշակության ասպարեզում ևս զգալի հաջողություններ են ձեռք բերվել։ 1946 թվականի համեմատությամբ 1947 թվականին 200 հեկտարով ընդարձակվեց ցանքերի տարածությունը, իսկ բերքատվությունն աճեց 20 ցենտներով։ Ճակնդեղագործական կոլխոզները 1947 թվականին, նախորդ տարվա համեմատությամբ պետությանը հանձնեցին 90 հազար ցենտներ ավելի շաքարի ճանկնդեղ։

Բարձր բերքի համար մղվող պայքարի հիանալի օրինակ ցույց տվին Ախուրյանի շրջանի Ղարիբջանյան գյուղի կոլխոզնիկներն ու կոլխոզնիկուհիները, որոնք միջին հաշվով յուրաքանչյուր հեկտարից ստացան 334 ցենտներ շաքարի ճակնդեղ, նախատեսված 230 ցենտների դիմաց։ Սպիտակի շրջանի Հարթա գյուղի կոլխոզը միջին հաշվով հեկտարից ստացավ ավելի քան 254 ցենտներ շաքարի ճակնդեղ։ Շատ առաջավոր կոլխոզնիկներ բերքատվության բարձրացման ռեկորդային ցուցանիշներ ձեռք բերեցին։ Ախուրյանի շրջանի Ղարիբջանյան գյուղի կոլխոզից օղակավար Հեղուշ Նազարյանի օղակը 3,5 հեկտար տարածության յու-



րաքանչյուր հեկտարից ստացավ միջին հաշվով 551 ցենտներ բերք, իսկ 2 հեկտարի վրա այդ օղակը միջին բերքատվությունը հասցրեց 798 ցենտների։ Կիրովականի շրջանի Մեղրուտ գյուղի կոլխոզնիկ Ա. Պողոսյանը յուրաքանչյուր հեկտարից աճեցրեց 980 ցենտներ շաքարի ճակնդեղի բերք։

Ռեսպուբլիկայի բամբակագործները 1947 թվականին նախորդ տարվա համեմատությամբ պետությանը 2620 տոննայով ավելի բամբակ հանձնեցին։ Այս թանկարժեք կուլտուրայի մշակության ասպարեզում ևս առաջ եկան և հռչակվեցին բարձր բերքի շատ վարպետներ։ Արտաշատի շրջանի Ներքին Դվինի գյուղի կոլխոզը միջին հաշվով հեկտարից հավաքեց 23 ցենտներ բամբակ. նույն շրջանի Դարղալու գյուղի կոլխոզը հավաքեց՝ 20 ցենտներ։ Հոկտեմբերյանի շրջանում բարձր բերք հավաքեցին Սովետական, Բամբակաշատ, Փոքր Շահրիար և այլ գյուղերի կոլխոզները։

Վերելք է ապրում նաև այգեգործությունն ու պտղաբուծությունը։ Մեկ տարվա ընթացքում խաղողի այգիների տարածությունն աճեց 11,5 տոկոսով, իսկ պտղատու այգիների տարածությունը՝ 44,4 տոկոսով։ Համե-

մատաբար բարելավվեց այգիների մշակությունը։

Ռեսպուբլիկայի սոցիալիստական գյուղատընտեսության ասպարեզում ձեռք բերված հաջողությունների շարքում ուշադրավ տեղ է գրավում ցանքաշրջանառության կիրառումը, որը անցյալ տարի ավելի լայն չափեր ընդունեց։ Այժմ արդեն մեր կոլխոզների մոտ 90 տոկոսում կիրառվում է ցանքաշրջանառությունը, որը ընթացիկ տարում հիմնականում կավարտվի։ Խոտադաշտային ցանքաշրջանառության կիրառումը կբարձրացնի մեր գյուղատնտեսության կուլտուրան, կապահովի նրա բարձր և կայուն բերքատվությունը։

Լայն ծավալ է ստացել Սովետական Հայաստանում իրրիգացիոն շինարարությունը։ Պատերազմի տարիներին և հետպատերազմյան երկու տարվա ընթացքում կատարված աշխատանքների հետևանքով ոռոգելի տարածությունները ռեսպուբլիկայում ավելացել են ևս 23 հազար հեկտարով։ Այս տարվանից սկսվել է Թալինի ջրանցքի առաջին հերթի շինարարությունը՝ 12 հազար հեկտար անջրդի հողեր ոռոգելու համար, ջրանցքներ են անցկացվելու Շամիրամի և Եղվարդի հողերի ոռոգման համար, Արարատյան դաշտավայ-



րում ցամաքեցվելու են 1.700 հեկտար ճահճային հողեր, արագացվում է Արազդայանի տափաստանի ցամաքեցումը։ Կիրառվող իրրիգացիոն ձեռնարկումների հետևանքով Սովետական Հայաստանի գյուղատնտեսությունը կստանա տասնյակ հազարավոր հեկտար նոր արգավանդ հողեր, գլխավորապես տեխնիկական կուլտուրաների մշակման և խաղողի ու պտղատու այգիների տարածություններն ընդարձակելու համար։

Մայիսյան տոնն աչքի ընկնող նվաճումներով են նշանավորում նաև ռեսպուբլիկայի անասնապահները։ Այդ նվաճումների պերճախոս ապացույց են հետևյալ թվերը. նախորդ տարվա համեմատությամբ 1947 թվականին ռեսպուբլիկայի կոլխոզներում 15 հազար գլխով ավելացավ խոշոր եղջերավոր անասունների քանակը, մանր եղջերավոր անասունների գլխաքանակն աճեց 90 հազար գլխով, 2200 գլխով աճեց ձիերի քանակը և 7500 գլխով՝ խոզերի քանակը։ Այսպիսով, մեկ տարվա ընթացքում ռեսպուբլիկայի կոլխոզներում ավելի քան 115 հազար գլխով աճեց հանրային հոտը։ Դրա հետ միասին բարձրացավ անասունների մթերատվությունը, նվազեցին կորուստները։

Հաջողությամբ ավարտելով գյուղատնտե-

սական տարին, ռեսպուբլիկայի մեքենա-տրակտորային կայանները 1947 թվականին նախորդ տարվա համեմատությամբ 31 հազար հեկտարով ավելի աշխատանք կատարեցին։ Աճել է ՄՏ կայանների արտադրական կարողությունը, կազմակերպվել են երկու նոր ՄՏ կայաններ։ Տրակտորների արտադրողականությունն աճել է 7,3 տոկոսով։ ՄՏ կայանների լավ աշխատանքի շնորհիվ, 1947 թվականին նախորդ տարվա համեմատությամբ 12,4 հազար հեկտարով ավելի աշնացան կատարվեց, 28,7 հազար հեկտարով ավելի ցրտահերկ։ Այս երկու հանգամանքները անշուշտ դրական ազդեցություն կունենան ընթացիկ տարվա բերքի վրա։

Առատ բերք աճեցնելով, Սովետական Հայաստանի կոլխոզնիկները հայրենասիրական բուռն զգացումով տոգորված, օրինակելիորեն կատարեցին Սովետական պետության հանդեպ ունեցած իրենց պարտավորությունները։ Ժամկետից շուտ ավարտելով հացամթերումների պլանը, կոլխոզները պլանից ավելի պետությանը հանձնեցին 350 հազար փութ հացահատիկ։

Զգալիորեն բարձրացել է կոլխոզնիկների նյութական և կուլտուրական կյանքի մակարդակը։ Ավելի լիարժեք է դարձել կոլխոզնիկ-



ների աշխօրը։ Նոր-Բայազետի, Աշտարակի, Սիսիանի, Ախտայի, Կոտայքի և շատ ուրիշ շրջանների կոլխոզներում աշխօրին բաշխվեց միջին հաշվով 3—4 կիլոգրամ հացահատիկ։ Սիսիանի շրջանի Բորիսովկա, Սպանդարյան, Սառնակունք գյուղերի կոլխոզներում շատ կոլխոզնիկներ իրենց աշխօրերի դիմաց ստացել են այնքան հացահատիկ, որը նրանց կբավարարի մի քանի տարի։

Սոցիալիստական գյուղատնտեսության ասպարեզում ձեռք բերված այս հաջողությունները, որոնցով կոլխոզային գյուղացիությունը դիմավորում է Մայիսի Մեկը, մեծ են և ուշագրավ։ Սակայն ավելի մեծ են այն խնդիրները, որ դրված են մեր գյուղատնտեսության առջև ընթացիկ տարում, հետպատերազմյան ստալինյան հնգամյակի երրորդ վճռական տարում։

Վերջերս տեղի ունեցած գյուղատնտեսության առաջավորների ռեսպուբլիկական խորհրդակցությունների մասնակիցները լիակատար պատրաստակամություն և վճռականություն հայտնեցին ընթացիկ տարին նոր և ավելի մեծ հաջողությունների տարի դարձնելու համար։

Նոր և ավելի մեծ քայլեր պետք է կատարվեն խաղողագործության և պտղաբուծու-

թյան ասպարեզում, ինչպես այգիների տարածությունները ընդարձակելու, այնպես էլ բերքատվությունը բարձրացնելու տեսակետից։ Մեծ աշխատանք պետք է կատարվի նաև անասնաբուծության զարգացման և գյուղատնտեսության մյուս ճյուղերի արտադրանքն ավելացնելու ասպարեզում։

Ուստի հասկանալի է, որ մենք այս տարի պետք է աշխատենք ավելի լավ, ավելի արդյունավետ, քան անցյալ տարի։ Լայն սոցիալիստական մրցությունը պետք է ընդգրկի կոլխոզային գյուղի բոլոր աշխատավորներին։

Սկսվել են գարնանային գյուղատնտեսական աշխատանքները։ Այս տարվա առաջին եռամսյակում գարնանային դաշտային աշխատանքների նախապատրաստությունն անցավ ավելի հաջող, քան անցյալ տարի։ Տրակտորների աշնան-ձմեռային նորոգումը ՄՏԿ-ներում ավարտվեց սահմանված պլանին համապատասխան։ Նոյեմբերյանի, Վեդու, Ղարիբջանյանի, Սպիտակի, Էջմիածնի և Ղարաբաղլարի ՄՏ կայանները ժամկետից շուտ և լավագույն որակով ավարտեցին տրակտորների նորոգումը։

Կոլխոզներում նույնպես ժամկետից շուտ ավարտվեց գյուղատնտեսական մեքենաների



աշնան-ձմեռային նորոգման պլանը։ Ամբողջ ռեսպուբլիկայում կոլխոզներն առաջին եռամսյակում լրիվ ավարտեցին գարնանացանի համար անհրաժեշտ սերմացուի ամբարումը։

Սեղմ ժամկետ և բարձր որակ— ահա թե ինչ է անհրաժեշտ միշտ և միշտ նկատի ունենալ դաշտային աշխատանքների ժամանակաշրջանում։ Վարը և ցանքը, դաշտային բոլոր աշխատանքները սեղմ ժամկետներում և բարձր որակով կատարելը առատ բերքի հիմնական նախապայմանն է։

Մայիսմեկյան տոնը թող խթան հանդիսանա կոլխոզային դաշտերում աշխատանքային նոր աննախընթաց վերելքի համար, գյուղատնտեսության ասպարեզում նորանոր և ավելի մեծ հաղթանակների համար։

## ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅՈՒՆԸ ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ ՄՂՎՈՂ ՊԱՅՔԱՐԻ ԱՎԱՆԳԱՐԴՈՒՄ

Մայիսի Մեկը— ամբողջ աշխարհի աշխատավորների մարտական ուժերի ստուգատեսի օրը, այս տարի նշվում է կայուն խաղաղության և ժողովրդական դեմոկրատիայի համար, նոր պատերազմի հրձիգների դեմ պայ-

ազատասեր ժողովուրդների կողմից մղվող պայքարի իրադրության մեջ։

Իմպերիալիզմի ու ռեակցիայի հենարանը հանդիսացող ամենից ավելի ագրեսիվ տերությունների՝ ֆաշիստական Գերմանիայի և իմպերիալիստական Ճապոնիայի ջախջախումը երկրորդ համաշխարհային պատերազմի հետևանքով, միջազգային ասպարեզում առաջացրեց քաղաքական ուժերի նոր խմբավորում։ Ստեղծվել են երկու լագեր— մեկ կողմում՝ իմպերիալիզմի ու հակադեմոկրատիայի լագերը, որի հիմնական առաջատար ուժն են Ամերիկայի Միացյալ Նահանգները, մյուս կողմում՝ հակաիմպերիալիստական, դեմոկրատական լագերը, որի մեջ ղեկավար դերը պատկանում է ՍՍՌՄ-ին։

Հայրենական Մեծ պատերազմի հաղթական ավարտման հետևանքով անչափ աճեց Սովետական Միության հեղինակությունը միջազգային ասպարեզում։ Ազատասեր ժողովուրդների հաղթանակի ընդհանուր ազնիվ գործի մեջ ամենամեծ ավանդը մուծեց սովետական ժողովուրդը, որը վճռական դեր խաղաց ֆաշիզմի ու ագրեսիայի գլխավոր օջախը ջախջախելու գործում, քաղաքակրթությունը փրկեց ֆաշիստական ջարդարարներից, իր



հերոսական Բանակի միջոցով եվրոպական մայր ցամաքի ժողովուրդներին ազատագրեց հիտլերյան լծից։ Այդ է պատճառը, որ այժմ էլ առաջադեմ մարդկությունը պայքարելով հանուն խաղաղության, ընդդեմ իմպերիալիստական ռեակցիայի ու նոր պատերազմի սպառնալիքի, իր հայացքը հույսով ուղղում է դեպի Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միությունը։

Ինչպես որ երկրորդ համաշխարհային պատերազմի տարիներին Սովետական Միությունը գտնվում էր ֆաշիստական ագրեսորների դեմ մարտնչող ժողովուրդների մարտական ավանգարդում, այնպես էլ պատերազմից հետո ՍՍՌՄ-ն ընթանում է ընդհանուր խաղաղության գործի, իսկական դեմոկրատիայի հաղթանակի համար պայքարող ժողովուրդների ավանգարդում։ ՍՍՌՄ-ը հետևողական պայքար է մղում դեմոկրատական կայուն խաղաղության համար, ամբողջ աշխարհի ժողովուրդների բարեկամական համագործակցությունն ամրապնդելու համար։ Բոլոր խաղաղասեր ժողովուրդները հանձին հզոր Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության տեսնում են խաղաղության և անվտանգության, ազա-

տության և անկախության հուսալի հենարանը։ Պատերազմն այդ բանը ցույց տվեց ամենայն ակնառությամբ։

ՍՍՌՄ հետպատերազմյան արտաքին քաղաքականությունը նույնպես այդ է ցույց տալիս։ Սովետական Միությունը վարում է խաղաղության հետևողական քաղաքականություն, ժողովուրդների իրավահավասարությունը ճանաչելու և նրանց օրինական շահերը հարգելու քաղաքականություն։

Ազատության և անկախության համար իրենց պայքարում աշխարհի ժողովուրդները մեծագույն աջակցություն են գտնում Սովետական Միության կողմից։ Վերջին երեսուն տարվա պատմությունը ցույց տվեց, որ աշխարհի ամեն մի մասում, երբ աշխատավորները հարկադրված են եղել իրենց սրբազան իրավունքները, իրենց ազատությունը պաշտպանելու արտաքին կամ ներքին թշնամիներից, նրանք միշտ էլ հանձին սովետական ժողովրդի գտել են իրենց շահերի հավատարիմ պաշտպանին։

Այդպես եղավ իտալական ֆաշիզմի դեմ հաբեշական ժողովրդի մղած պայքարում, այդպես եղավ ֆաշիզմի դեմ ռեսպուբլիկական Իսպանիայի ժողովրդի հերոսական



պայքարում։ Իբրև այդ ժողովուրդների շահերի միակ հավատարիմ պաշտպան միշտ հանդես է եկել սովետական ժողովուրդը։

Այդպես էլ այժմ Սովետական Միությունը կանգնած է ամբողջ հակաիմպերիալիստական, դեմոկրատական լագերի պայքարի ավանգարդում, պաշտպանում է մեծ և փոքր ժողովուրդների ազատությունն ու անկախությունը, մարդկության և քաղաքակրթության շահերը, հետևողականորեն պայքարում է միջազգային համագործակցության համար։

Իմպերիալիստական և հակադեմոկրատական լագերի դեմ մղվող պայքարում Սովետական Միության հետ միասին ընթանում են նոր դեմոկրատիայի երկրները։

Երկրորդ համաշխարհային պատերազմում դեմոկրատիայի ուժերի հաղթանակի հետևանքով Արևելյան Եվրոպայի մի շարք երկրներ դուրս ընկան իմպերիալիզմի շղթայից։ Այդ երկրների ժողովուրդները, ասում է ընկեր Ստալինը, չցանկանալով այլևս ապրել հին ձևով, իրենց ձեռքն են վերցնում իրենց պետությունների բախտը, հաստատում են դեմոկրատական կարգեր և ակտիվ պայքար են մղում ռեակցիայի ուժերի դեմ, նոր պատերազմի հրձիգների դեմ։ Արդարացի դեմո-

կրատական խաղաղությունն ապահովելու համար մղվող պայքարում Սովետական Միության շուրջն են համախմբվել դեմոկրատական երկրները։ ՍՍՌՄ-ը նոր դեմոկրատիայի երկրների հետ միասին այն ուժն է, որն ընդդիմանում է համաշխարհային տիրապետության ասպարեզում ԱՄՆ-ի ձգտումներին։

Ինչպես փաստուն կերպով ցույց է տրված Սովետական Ինֆորմբյուրոյի՝ «Պատմության կեղծարարները» պատմական փաստաթղթի մեջ, Գերմանիան հանդիսանում էր միջազգային ռեակցիայի ավանգարդը, և խոշոր տերությունների թողտվության ու «չմիջամտության» քաղաքականության հետևանքով նա նոր համաշխարհային պատերազմ փաթաթեց մարդկության վզին։ Համաշխարհային ռեակցիան գերմանական ու ճապոնական ագրեսիան ուղղեց ՍՍՌՄ-ի դեմ։ Պատերազմի ընթացքում Անգլիայում և ԱՄՆ-ում աճում էր ռեակցիոն ուժերի ակտիվությունը, որոնք ձգտում էին վիժեցնել դաշնակից տերությունների համաձայնեցված գործողությունները, ձգձգել պատերազմը, արյունաքամ անել ՍՍՌՄ-ը և լիակատար ջախջախումից փրկել ֆաշիստական ագրեսորին։



Պատերազմից հետո ԱՄՆ-ի և Անգլիայի ռեակցիոն շրջաններն էլ ավելի ուժեղացրին իրենց պայքարը դեմոկրատիայի ուժերի դեմ։ Երկրորդ համաշխարհային պատերազմն ավարտվելուց հետո, հատկապես ամերիկյան իմպերիալիզմը անցավ բացահայտ էքսպանսիոնիստական քաղաքականության։

Ամերիկայի Միացյալ Նահանգներն ամեն կերպ աջակցում են ամբողջ աշխարհի ռեակցիոն ուժերին։ Ըստ որում լկտիաբար խաբելով ժողովուրդներին և քողարկվելով «կոմունիզմի դեմ» արշավանքի լոզունգով, ամերիկյան իմպերիալիստները վարում են ամեն մի դեմոկրատիա ճնշելու քաղաքականություն, զինում են ռեակցիոն ուժերին։ ԱՄՆ-ը զինում է հունական ռեակցիոններներին, բոլոր միջոցներով ու հնարավորություններով օգնում է գոմինդանական բանակին՝ Չինաստանում, գաղութացնողներին՝ Ինդոնեզիայում, զենք և զինվորական հրահանգիչներ է ուղարկում Հունաստան, Թյուրքիա, Չինաստան, Իրան և այլ երկրներ։

Անգլո-սաքսոնական երկրների ռեակցիոն, իմպերիալիստական շրջանների նվաճողական քաղաքականության նպատակն է մյուս ժողովուրդների տնտեսական ու քաղաքական

սարկացամբ։ Դրա ամենից ավելի ցայտուն ապացույց են հանդիսանում «Մարշալլի պլանը» և «Տրումենի դոկտրինան», որոնք աստիճանաբար, դոլարի ուժով ձգտում են կաշկանդել եվրոպական երկրների քաղաքական շրջաններին, տնտեսական օգնություն ցույց տալու անվան տակ փաստորեն միջամտում են այդ երկրների ներքաղաքական կյանքին։

Ամերիկայի Միացյալ Նահանգների և Անգլիայի քաղաքական շրջանները տեսնում են, որ ՍՍՌՄ-ը հետևողականորեն պաշտպանում է խաղաղության գործը և նրանց թույլ չի տալիս իրագործելու իրենց նվաճողական պլանները։ Ուստի նրանք դիմում են զանազան խորամանկ միջոցների — ՍՍՌՄ-ից ծածուկ կոնֆերենցիաներ ու խորհրդակցություններ են գումարում ԱՄՆ-ից կախման մեջ գտնվող երկրների մասնակցությամբ, որոնք հարկադրաբար հնազանդվում են նրանց կամքին։ Դրա ցայտուն ապացույցն են «Արևմտյան բլոկ» ստեղծելու ջանքերը՝ ԱՄՆ-ի գլխավորությամբ։ ԱՄՆ-ի պրեզիդենտ Տրումենի վերջին ելույթը կրկին անգամ ցույց է տալիս իմպերիալիստական Ամերիկայի ձգտումը համաշխարհային տիրապետության։



Բայց իմպերիալիզմի քաղաքականագետները մոռանում են, որ երկրորդ համաշխարհային պատերազմի հետևանքով աշխարհում արմատապես փոխվել է քաղաքական իրադրությունը, որ աշխարհի ժողովուրդներն այժմ շատ ավելի հեռուն են տեսնում և հեշտությամբ չեն ենթարկվում խաբեության։ Իմպերիալիզմի գործակալները չեն հասկանում, որ «կոմունիզմ» բառի սպեկուլյացիայով իրենց չի հաջողվի թշնամական տրամադրություն առաջացնել լայն մասսաների մեջ դեպի Սովետական Միությունը, որն ամբողջ մարդկության աչքի առջև իր հաղթական բանակով հանդիսացավ ֆաշիստական Գերմանիայի ու իմպերիալիստական Ճապոնիայի ջախջախման հիմնական ուժը և այժմ էլ կայուն ու արդարացի խաղաղության միակ հետևողական պաշտպանն է։

Անգլո-սաքսոնական երկրների արտաքին քաղաքականության ղեկավարները չեն հասկանում կամ չեն ուզում հասկանալ, որ սովետական ժողովրդի հետ են աշխարհի բոլոր ժողովուրդները, որ եթե իրենք դեմ են մեզ, ապա դեմ են բուն ամերիկյան ժողովրդին, որ եթե նրանք հանդես են գալիս մեր դեմ, ապա դրանով իսկ հանդես են գալիս իրենց իսկ սեփական ժողովուրդների դեմ։ Աշխարհի

խաղաղասեր ժողովուրդները նրա համար չխափեցին իրենց արյունը գերմանական ֆաշիզմի դեմ մղած մարտերում, որպեսզի այժմ ընկնեն համաշխարհային տիրապետության նոր հավակնորդների լծի տակ:

Ահա այսպիսի միջազգային իրադրության մեջ են բոլոր երկրների աշխատավորները դիմավորում Մայիսի Մեկի առաջիկա տոնը: Այս հանգամանքը բոլոր աշխատավորներից, ազատության և դեմոկրատիայի բոլոր պաշտպաններից պահանջում է միացյալ ուժերով անդուլ պայքար մղել միջազգային ռեակցիայի ոտնձգությունների դեմ, բոլոր միջոցներով ու եղանակներով պայքարել խաղաղությունը խախտելու փորձերի դեմ, նոր պատերազմ հրահրողների դեմ, համաշխարհային տիրապետության ձգտողների դեմ:

Ներկա միջազգային բարդ իրադրության մեջ աշխատավորների շահերի, դեմոկրատիայի և սոցիալիզմի համար, ռեակցիայի ուժերի դեմ մղվող պայքարի ավանգարդում ընթանում են աշխարհի բոլոր երկրների կոմունիստները, որոնց ազդեցությունը աշխատավորական լայն մասսաների մեջ օրեցօր աճում է: Դրա ցայտուն ապացույցն է կոմունիստական պարտիաների թվական կազ-



մի անընդհատ աճումը: Կոմունիստական պարտիաների դրոշի շուրջը համախմբվելով, աշխատավորության դեմոկրատական լայն խավերը բոլոր երկրներում պաշտպանում են իրենց հաստատ կամքը՝ սանձահարելու իմպերիալիստական ռեակցիան: Գնալով ավելի ու ավելի է աճում բոլոր երկրների աշխատավորների համակրանքն ու սերը դեպի Սովետական Միությունը, ամբողջ աշխարհում ավելի ու ավելի են համախմբվում դեմոկրատիայի ու սոցիալիզմի ուժերն ընդդեմ համաշխարհային ռեակցիայի, նոր պատերազմի հրձիգների:

Սովետական Միության ժողովուրդներն այս տարվա Մայիսի Մեկը դիմավորում են հետպատերազմյան ստալինյան հնգամյակի երրորդ տարվա պլանների կատարման ու գերակատարման համար մղվող անդուլ պայքարի մեջ, աշխատանքային բուռն վերելքի պայմաններում: Ամենուրեք՝ արդյունաբերական ձեռնարկություններում և կոլխոզային դաշտերում ծավալվել է նախամայիսյան սոցիալիստական մրցությունը, ընդունելով իրոք համաժողովրդական բնույթ:

Սովետական Միության աշխատավորները միջազգային ռեակցիայի ոտնձգություններին

պատասխանում են աշխատանքի արտադրողականությունն է՛լ ավելի բարձրացնելով, իրենց խաղաղ ստեղծագործ աշխատանքի հետագա ծավալումով։ Ոչ մի րոպե չմոռանալով հարազատ հայրենիքի՝ Սովետական Միության պաշտպանական հզորությունն է՛լ ավելի ամրապնդելու մասին, նրանք Լենինի-Ստալինի փառապանծ պարտիայի ղեկավարությամբ, ժողովրդի մեծ առաջնորդ ընկեր Ստալինի գլխավորությամբ վստահորեն ընթանում են դեպի կոմունիստական հասարակարգի կառուցումը մեր երկրում։

Սովետական ժողովուրդը մեծ Ստալինի հանճարեղ առաջնորդությամբ, իր գործի և իր ապագայի նկատմամբ լիովին վստահ, անդուլ կերպով պայքարում է խաղաղության, դեմոկրատիայի և առաջադիմության համար։ Խաղաղության և դեմոկրատիայի բոլոր իսկական բարեկամները Սովետական Միության նկատմամբ խորին երախտագիտության զգացմունքով Մայիսի Մեկին— աշխատավորների ռևոլյուցիոն ուժերի մարտական ստուգատեսի օրը դուրս կգան միտինգների և ցույցերի, գոչելով.



— Կեցցե՛ աշխատավորների միջազգային տոնը— Մայիսի 1-ը։

— Կեցցե՛ մեծ և հզոր Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միությունը— խաղաղության և անվտանգության, ժողովուրդների ազատության և անկախության հուսալի հենարանը։

## Ի՞ՆՉ ԿԱՐԴԱԼ ՄԱՅԻՍԻ ՄԵԿԻ ԱՌԹԻՎ

Վ. Ի. ԼԵՆԻՆ.— Մայիսի Մեկը: *Պետքաղհրատ, Երևան, 1941 թ.:*

Ի. ՍՏԱԼԻՆ.— Երկեր, *հատ. 2, էջ 257, Հայպետհրատ, Երևան, 1947 թ.:*

Ի. ՍՏԱԼԻՆ.— Սովետական Միության Հայրենական Մեծ պատերազմի մասին. *Հայպետհրատ, Երևան, 1946 թ.:*

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ.— Ճառ Մոսկվա քաղաքի Ստալինյան ընտրական օկրուգի ընտրողների նախընտրական ժողովում, 1946 թ. փետրվարի 9-ին. *Հայպետհրատ, Երևան, 1946 թ.:*

Վ. Մ. ՄՈԼՈՏՈՎ.— Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 30-ամյակը: *Զեկուցում Մոսկվայի Սովետի հանդիսավոր նիստում 1947 թ. նոյեմբերի 6-ին: «Սովետական Հայաստան», 7 նոյեմբերի 1947 թ.:*



Ա. Ա. ԺԴԱՆՈՎ.— Միջազգային դրության մասին: *Զեկուցում մի քանի կոմպարտիաների ներկայացուցիչների 1947 թ. սեպտեմբերի վերջերին Լեհաստանում տեղի ունեցած ինֆորմացիոն խորհրդակցությանը: «Սովետական Հայաստան» 1947 թ. № 250:*

Մ. Ա. ՍՈՒՍԼՈՎ.— Լենինի գաղափարները լուսավորում են կոմունիզմի ուղին: *Զեկուցում Մոսկվայում Վ. Ի. Լենինի մահվան 24-րդ տարեդարձին նվիրված սգո-հանդիսավոր նիստում, 1948 թ. հունվարի 21-ին: «Սովետական Հայաստան», 22 հունվարի 1948 թ., կամ «Պարտիական կյանք» ժուռնալ, № 1, 1948 թ.:*

ՀԵՏՊԱՏԵՐԱԶՄՅԱՆ ԺԱՄԱՆԱԿԱՇՐՋԱՆՈՒՄ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՎԵՐԵԼՔԻ ՄԻՋՈՑԱՌՈՒՄՆԵՐԻ ՄԱՍԻՆ: ՀամԿ(բ)Պ Կենտկոմի պլենումի որոշումը ընդունված ընկ. Ա. Անդրեևի զեկուցման առթիվ: *«Ագիտատորի բլոկնոտ», 1947 թ. № 8:*

ՕՐԵՆՔ ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության վերականգնման և զարգացման 1946—1950 թ. թ. հնգամյա պլանի մասին: *Հայպետհրատ, Երևան, 1946 թ.:*

ՕՐԵՆՔ Հայկական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության վերա-

կանգնման և զարգացման 1946—1950 թ. թ. հնգամյա պլանի մասին: *Հայպետհրատ, Երևան 1946 թ.:*

**ՍՍՌՄ ՊԵՏՊԼԱՆԻ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ** ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության վերականգնման և զարգացման 1948 թվի առաջին եռամսյակի պետական պլանի կատարման արդյունքների մասին: *«Սովետական Հայաստան» 16 ապրիլի 1948 թ.:*

**ՍՍՌՄ ՊԵՏՊԼԱՆԻ ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՌ ԼԻԱԶՈՐԻ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ** Հայկական ՍՍՌ ժողովրդական տնտեսության զարգացման 1948 թ. առաջին եռամսյակի պետական պլանի կատարման արդյունքների մասին: *«Սովետական Հայաստան», 18 ապրիլի, 1948 թ.:*



